ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 6 1962

ՊԱՐՈՒՅՐ ՄՈՒՐԱԴՅԱՆ

# «ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՊՂՆՁԷ ՔԱՂԱՔԻ» ԶՐՈՒՅՑԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՎ ՎՐԱՑԱԿԱՆ ՊԱՏՈՒՄՆԵՐԻ ՈՒ ՆՐԱՆՑ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՇՈՒՐՋ

Հնդկական ծագում ունեցող «պատմությունների» կամ «զրույցների» մի բավական ստվար շար վաղ միջնադարում, ուղղակի կամ միջնորդավորմամբ, անցել է պարսից գրականություն։ Հետագայում, հատկապես խալիֆաթի տիրապետության շրջանում, «պատմությունների» այս շարք թափանցեց արաբական, ավելի ճիշտ՝ արաբալեզու գրականության մեջ։ Առայժմ վկայակոչել այն խմբագրությունը, որ հետագա տարբերակումների նյութ դարձավ՝ հնարավոր չէ։ Նախ, ավելի հավանական է բանավոր փոխանցումը, իբրև «շրջիկ թեմաներ» և ապա՝ պատումներն այնքան շատ են, որ սկզբնատեքստի հարցը նկատելի խճճվում է։ «Աբդլ Ջաֆարի», «Փիր Փահլուլի», «Պղնձէ քաղաքի» պատմությունների շարքին պատկանող «Գիր հանելուկի» (կամ «Հարցմունք աշկան ընդ մանկան») զրույցն, օրինակ, իր զուգահեռություններն ունի մի շարք ժողովուրդների մոտ, այդ թվում նաև՝ հայերենում ու վրացերենում։ Սյուժեի առումով այն խիստ մերձ է ռուսական «Беседа трех Святителей» պատմությանը[1]. Մինչդեռ վրացական թարգմանության կամ պատումի հիշատակարանի համաձայն այն թարգմանվել է Թեյմուրազ արքայի կողմից՝ հունարենից[2]։ Պրոֆ. Մոչուլսկին փորձեց գտնել վերոհիշյալ ռուսական պատումի հունական սկզբնաղբյուրը[3], որով կլուծվեր և նրա՝ վրացականի հետ ունեցած մերձությունը։ Նա վկայակոչում է Վիեննայի արքայական գրադարանի XII դարին պատկանող մի գրչագիր, ուր 19—31 հարցերը Նոր կտակարանին վերաբերող թեմաների հետ են առնչվում, մինչդեռ վրացական պատումում հարցերը միայն Հին կտակարանից են։ Նույն զրույցի լատինական երեք խմբագրություն ունեցող տեքստերի համադրումը ևս չփոխեց վիճակը և մինչև այժմ սկզբնատեքստը կարոտ է ճշտման[4]։

«Պղնձէ քաղաքի» պատմությունը արաբական գրականությունից փոխադրվել է մի շարք լեզուների, այդ թվում նաև՝ հայերենի ու վրացերենի, ոչ եզակի տարբերակումներով։ Հայագիտությանն այժմ հայտնի է «Պղնձէ քաղաքի» երեք տարբերակ։ Չորրորդը, որ 1958 թ. հայտնաբերվեց ու հրատարակ-

[1] Тихонравов, Н. С., Памятники отречен. русск. литературы, II, М., 1863. էջ 429—432։

[2] Хаханов Ал. С., Очерки по истории груз. словесности, вып. I, М., 1895. էջ 175, ծան. 1։

[3] Мочульский, Следы народной Библии в славянской и древнерусск. письменности, Одесса, 1893 г.

[4] «Հարցմունք աշկան ընդ մանկան»-ի հայկական պատումները ավելի սերտ են առնչվում վրացական տարբերակին։

վեց Ն. Ակինյանի կողմից, վերաբերում է X դարի վերջին տասնամյակին: Ն. Ակինյանի նկարագրմամբ՝ Համբի ս. Վլասի հայոց հյուրանոցի № 33 գրչագրում հիշյալ «զրույցները» ներփակված են մի խորագրի տակ. «Զրույց և խոսք առաջի թագաւորացն եւ իշխանացն, զոր թարգմանեցին Դաւիթ Կուրոպաղատին՝ ի հայ լեզու ի տաճիկ լեզվէ»[6]: Խորագրի առաջին մասը որոշ է (արքունիքում «ի զվարճութիւն» թագաւորաց ու իշխանաց պատմելու համար), բայց ինչպե՞ս հասկանալ «զոր թարգմանեցին Դաւիթ Կուրոպաղատին» արտահայտությունը: Ակինյանը մեկնում է. «Այս զրույցները «թարգմանեցին» այլ և այլ թարգմանիչներ»: Մեզ համար փոքր ինչ կասկածելի է թվում «թարգմանեցին» բառի քերականական ընկալումը. միջին հայերենում շատ տարածված էր կրավորական «ի»-ի գործածումը, ուստի ավելի ճիշտ կլիներ հասկանալ իբրև «թարգմանեցան > թարգմանվեցին»: Այլապես «թարգմանեցին Դաւիթ Կուրոպաղատին» ստիպված կլինենք հասկանալ «կ» ձայնի բարբառների ժամանակակից հոլովառությամբ, որ չի կարելի նույնացնել թեկուզ իրենց նախավիճակի՝ Տայքի բարբառի հետ: Թարգմանության ժամանակի հարցը որևէ կասկած չի հարուցում, որովհետև Տայքում հայտնի երկու Դավիթ կյուրոպաղատներից միայն երկրորդը՝ Դավիթ Մեծ Կուրոպաղատը (დავით დიდი კურაპალატი) կարող էր պատվիրատու լինել. Դավիթ առաջին Կուրոպաղատը ոչ հնարավորություն ուներ, ոչ էլ ժամանակ «Պատմությամբ զվարճանալու»[7]: Խոսքը վերաբերում է Դավիթ Կուրոպաղատին (Մեծ), որ վախճանվել է 1000 թ. «յաւուր մեծի փրկական զատկին»[8]:

«Պղնձէ քաղաքի» երկրորդ հայերեն թարգմանությունը, գրչի հիշատակագրության համաձայն, կատարվել է XIII դարի առաջին քառորդում՝ Առաքել վարդապետի կողմից[9]: Բանասերներից շատերը, մեր կարծիքով իրավամբ, այս Առաքել վարդապետին նույնացնում են Առաքել աբեղա Անեցու կամ Շիրակավանցու հետ[10], որը Մխիթար Չեչկանց Շիրակավանցու օգնությամբ 1222 թ. արաբերենից թարգմանել է «Աղեկախոսը»[11] և «Վասն երկոտասան կենդանակերպիցն»-ի հեղինակն է: Գրիգորիս Աղթամարցուն նվիրած ուսումնասիրության մեջ[12] Ն. Ակինյանը կասկածում է Առաքել Անեցու թարգմանիչ լինելու ստուգությունը, վկայակոչելով, որ իրեն ծանոթ երեսուն ձեռագրերից միայն մեկն է սույն թարգմանչին անվանակոչում: Ինչպես հետագայում կտեսնենք, մինչ Գրիգորիս Աղթամարցին, բացի վերևում նշած առաջին թարգմանությունից, մի երկրորդ թարգմանություն է գոյություն ունեցել, որովհետև հիշյալ երկուսը տարբեր խմբագրություններ են վկայում՝ բնագրում: Իսկ այդ երկրորդ խմբագրության Առաքել վարդապետի կողմից թարգմանված լինելը հերքելու

[5] Հանդես ամսօրյա, 1958 թ., 1—4, էջ 21—48:

[6] Խորապես շնորհակալ ենք մեծարգո Սուրեն Երեմյանից՝ հիշյալ փաստը մեր ուշադրության առաջարկելու համար:

[7] Կուրոպաղատների պատմության մանրամասն քննությունը տես՝ ივ. ჯავახიშვილი, ქართ. ერის ისტორია. ტ. III.

[8] Ասողիկ, 3, գլ. ԽԳ, նաև՝ ქართლის ცხოვრება. I:

[9] Տաշեան, Ցուցակ, էջ 354ա, նաև՝ Անդրիկեան, Բազմավէպ, 1906 թ., էջ 299:

[10] Ա. Խախանաշվիլին (նույն Хаханов) սխալմամբ առաջադրել է Шираc-Внеци:

[11] Արաբերեն՝ Թուֆասամսը, հեղինակներն են Խալամ խանը և Սոլթանը: Տես. Տաշեան, Ցուցակ, էջ 348 և Հովնանեան, Հետազոտ. Բ, 332:

[12] Գրիգորիս Ա կաթողիկոս Աղթամարցի, Վիեննա, 1958, էջ ԾԳ—ԾԶ:

որևէ լուրջ փաստարկ չենք տեսնում։ Աքինյանը գրում է, թե «Տակաւին չէ յայտնուած Պղնձէ քաղաքի պատմութեան նախագրիգորիսեան օրինակը»[13]։ Եթե Դավիթ Կուրապաղատի պատվերով թարգմանված օրինակը «տակաւին չէ յայտնուածը» համարենք, ապա Ն. Աքինյանը այդ տեքստը հրատարակելիս գոնե կծանոթացներ, որ այն գտնված է։ Ծանոթագրությունների մեջ այդ մասին խոսք չկա, կարծում ենք, որովհետև նա ինքն էլ վերջին հայտնաբերածը Գ. Աղթամարցու ձեռքի տակ եղած «լուսաձվող» տեքստ չի համարել։ Ավելին. նրա համոզմամբ «թարգմանութիւնը հին է (խոսքը վերաբերում է «Պղնձէ քաղաքի» նախագրիգորիսյան խմբագրությանը —Պ. Մ.), հաւանօրէն 1250—1350 շըր-ջանէն, երբ ծաղկեցան Ֆրիկ եւ Յովհաննէս եւ Կոստանդին Երզնկացիք...»[14]։ Այլև ինչո՞ւ կասկածի տակ առնել Առաքել Անեցու թարգմանությունը, երբ լեզ-վական իրողությունները ևս նրա օգտին են խոսում[15]։

Վերջին, երրորդ խմբագրությունը, ինչպես արդեն ակնարկվեց, Գրիգորիս Աղթամարցուն է պատկանում, որ «լուսաձել է» պատմությունը։ Այստեղ կա-տարվել է նույնը, ինչ տեղի էր ունենում վարքագրական կիմենյան խմբագրու-թյունները մետափրաստյանի վերածելիս։ Ժամանակակիցները այդպես էլ վկա-յակոչում են. «Աշխատեցաւ (Գ. Աղթամարցին —Պ. Մ.) ի հետ սորա եւ ԽԳ այր իւրմէն ասէր է ի սա. Թող զայն, որ զերկու վանկն եւ զմի ինքն է արարեալ ի բնական ոգերն, զի պակասէր»[16]։

Նույնն է վկայում Գ. Աղթամարցու չափածո հիշատակարանը[17]։ Ն. Սահակ-յանը հակված էր կարծելու, թե Աղթամարցին միաժամանակ «Պատմության» թարգմանիչն է, մինչդեռ, բացի վերոհիշյալ երկու ծանոթություններից, 1526 թ. գրչագրի ընդօրինակողը պարզ-պարզ ասում է, որ «Յիշեցէք ի Քրիստոս զԳրի-գորիս կաթողիկոս Աղթամարցի, (որ) զօրինակն շնորհեաց. զոր ստուգեալ եւ ուղղագրեալ ի յաստ մատյն բեթ. Թող զայն, որ վանգով եւ երկու վանգով պակասէր՝ զթերին լցի»։ Ուրեմն Գ. Աղթամարցին «լուսաձել» է իրոք և ոչ թե թարգմանել։ Հիշյալ նախագրիգորիսյան երկու խմբագրություններից ո՞րն է երրորդ տարբերակման նախատեքստ հանդիսացել։ Ինչպես նշել ենք, Դավիթ Կուրապաղատի պատվերով թարգմանվածը չէր կարող լինել, որովհետև բազ-մաթիվ այսպիսի տարբերությունների կարելի է հանդիպել.

---

13 Նույն տեղում, էջ ՃԷ։

14 Գրիգորիս Ա կաթողիկոս Աղթամարցի, Վիեննա, 1958, էջ ՃԶ—ՃԷ։

15 Հ ո վ ն ա ն յ ա ն Ղ., Հետազոտություններ նախնեաց ամկերէնի վրայ, էջ 331—337 (Հատ-վածներ Վիեննայի № 88 ձեռագրից)։

16 Իրո՞ք Մարգարե վարդապետի հիշատակագրությունն է։

17 Առաջինը հրատարակել Ն. Սահակյանը, տես նրա Գրիգոր[իս] կաթողիկոս Աղթամարցի և «Պղնձե քաղաքի» թարգմանությունը, Տաճար, 1912, № 40, էջ 595—596։

Քառասուն 'ւ երեք սար ու ճամփայ,
առանձնար ազր ի արմա—
Յանիմաստէս դրբեալ ի սա
մրատզդ ձեր հանոյանաց։

**Ժ դարի թարգմ.**

*Եւ նստաւ Սողոմոն նաղուբ թախտըն եւ վէզիրին հրամայեաց Դէմէտրիանին, թէ դու ձախ դէհն կաց, եւ Քարիմատինի՝ աջ դէհն. մարմնաւորք եւ քաջքն յաջնենուն...*

*Դէմետրիանն կանչեց. նայ ինձ թվեցաւ, թէ անդունդք պատառեցան ի նարայ ահեղ ձայնէն...*

*(Հանդ. ամս. էջ 39)*

**Գ. Աղթամարցու «պատմած»-ը**

*.. Ու պարծեցայ, թէ զՍողոմոնի վէզիրն Ամիրաթ բերեմ առաջի իմ թագաւորին: Կանչեցի եւ խառնեցայ ի հեծելն ասելով, թէ դայլ որ չուզեմ, բայց զքեզ Ամիրաթ. եկ զի տեսցար զիրար: Եւ նայ ես գոչեաց ահեղագոչ ձայնիւ և ինձ այնպէս թուեց, թէ՝ երկինքն պատառեցաւ և փլաւ ի վերա իմ:*

*(Գիրք պատմ. որ կոչի Պղնձէ քաղաք, Կ. Պոլիս, 1820 թ., էջ 22—23)*

«Լուսածելիս» սովորաբար, հավելում կամ կրճատում են (հազվադեպ) սկզբնագիրը, հիմնական ղանազանությունը գեղարվեստականությամբ է պայմանվում, իսկ այստեղ բոլորովին այլ խմբագրություններ են՝ տարբեր զորավարներով՝ Ամիրաթ—Դէմէտրիա, Քարիմատին: Մնում է հավատալ, որ Գ. Աղթամարցին մշակել է Առաքել Անեցու թարգմանությունը. այդ է պատճառը, որ երկու խմբագրությունների արձակ բաժինները հաճախ նույնանում են միմյանց: Քանի դեռ «Պղնձէ քաղաքի» բաղդատական ընդհանրացնող տեքստ գոյություն չունի, դժվար է բոլոր հարցերը սպառիչ քննության ենթարկել[18]:

Հիշյալ հայկական երեք խմբագրությունները երկու արաբական բնագիր են վկայում, որոնք, գուցե և, տարբեր միջավայրերում ձևավորված պատումներ են եղել:

Այսպիսով, հայերենում գոյություն ունի երկու թարգմանություն արաբերենից՝ X և XIII դդ. և մեկ գեղարվեստական մշակում (հատկապես «որբերի» կամ «կաֆանների» հատվածներում): Իսկ այսուհետ բնագրային մերձության ու պատումների առումով՝ ունենք երկու խմբագրություն՝ համառոտ և ընդարձակ:

* * *

«Պղնձէ քաղաքի» պատմությունը երկու պատումներով թարգմանվել է նաև վրացերեն: Վրաց բանասիրության մեջ անցողակի դիտողություններ միայն կարելի է գտնել այս «պատմությանը» վերաբերող հարցերի շուրջ: Միայն պրոֆ. Կ. Կեկելիձեն է գիտական հարցադրում կատարել, սակայն, չունենալով ուղղակի վկայություններ տեքստի թարգմանության ժամանակի, լեզվի ու մի շարք այլ պարագաների մասին, մեծարգո պրոֆեսորը սահմանափակվել է հարցադրմամբ:

Բանասեր Ալ. Խախանաշվիլին 1901 թ. իր գրադարանին պատկանող XVIII դարի վրացերեն մի գրչագրից ռուսերեն թարգմանությամբ հրատարակեց «Պղնձէ քաղաքի» պատմության կամ վրացերեն სპილენძისქალაქიანი-ի տեքստը[19]: Հրատարակիչը կարծել էր, որ «հավանաբար հայերենից թարգ-

---

18 Այժմ հայտնի են երեսունից ավելի գրչագրեր և տասնյակն անց հրատարակություններ. հնագույններն են՝ 1708, 1709, 1731, 1749, 1792 թթ. հրատարակությունները:

19 Хаханов Ал. С., Очерки по ист. груз. словесности. вып. III, М., 1901 г., стр. 162—169.

մանված կլինի», բայց, որովհետև ձեռքի տակ փաստեր չի ունեցել՝ միտքը կիսավարտ էլ թողել է։ Ավելի ուշ հայտնի դարձավ, որ վրաց մատենագրության մեջ պահպանվել է «Պատմության» չափածո օրինակը[20]։ Պրոֆ. Կ. Կեկելիձեն նորահայտ այս պատումը Խախանաշվիլու հրատարակության հետ համեմատելիս համոզմունք հայտնեց, որ «գործ ունենք երկու տարբեր պատումների հետ»[21]։ Քանի որ նրանցից մեկը լրիվ չափածո է, նշենք արձակ բաժնի հետ ունեցած մի քանի տարբերություններ.

| Ըստ արձակի (Խախանաշվ.) | Ըստ չափածոյի (S—101) |
|---|---|
| ա) Պատմությունն սկսվում է Սողոմոնի «մատնեհարած» (մոհրած) դևերի որոնելու ցանկությամբ | ... Պղնձէ քաղաքի որոնմամբ |
| բ) Ճանապարհվում են 100 ուղտով | ... 1000 ուղտով |
| գ) Սողոմոնի զորավարը կրում է Ամիրան անունը | ... Դէմեդիս |
| դ) Մինչ Պղնձէ քաղաք 40 օրվա ճամփա է | ... 12 օրվա |
| ե) Հիշվում է Խարարու (?) երկիր | ... չկա |

և այլն։

Ինչպես երևում է, իրար երկու պատումներ են, որոնց, հայկական զուգահեռությունների համաձայն[22], այսուհետ կոչելու ենք համառոտ և ընդարձակ։

Նախ ընդարձակ տարբերակի մասին։

Խախանիշվիլու նկարագրության համաձայն, նրա ձեռքի տակ եղած գրչագիր ժողովածուն բացի «Պղնձէ քաղաքի» պատմությունից ամփոփել է նաև «Հարցմունք աշխան ընդ մանկան», «Իմաստութիւնք Խիկարայ»-ն։ Ձեռագիրը XVIII դարի գրչություն է եղել։ Հիշյալ երեք պատմություններից «Իմաստութիւնք Խիկարայ» խրատականը թարգմանվել է հայերենից՝ XVIII դարում, «Հարցմունք աշխան ընդ մանկան»-ի վրացական խմբագրությունները տակավին ուսումնասիրված չեն, բայց նախնական տպավորությամբ, սույն ժողովածուում ընդգրկվածը փոխադրված է հայերենից, իսկ Թեյմուրազ արքայի թարգմանությունը՝ հունարենից (հիշատակագրության համաձայն)։ Կրկնակի թարգմանությունները վրաց գրականության մեջ հաճախ են պատահում, որի լավագույն վկայությունն է Պետրիծու «Մեկնությունների» վերաթարգմանությունը հայերենից[23]։

«Պղնձէ քաղաքի» վրաց ընդարձակ խմբագրությունը նույնպես, ի թիվս հիշյալների, թարգմանություն է հայերենից։ Ճիշտ է, վրացական տեքստի շատ մասնակի տարբերություններ առիթ են տվել ազգային բանահյուսության մեջ նրանց բացատրությունը որոնելու, այնուամենայնիվ՝ հայկական սկզբնաղբյուրը կանխում է որևէ թյուրիմացություն։

---

[20] Թբ. Ձեռ. ինստ. S—101։

[21] კ. კ. კეკელიძე, ძველი ქართული მწერლობის ისტორია, II³, էջ 242։

[22] Մանրամասն քննությունը տես հաջորդ էջերում։

[23] Անտոն Ա կաթողիկոսը շատ կանխեց այս երևույթը, այլապես XVIII դարում շատ երկեր կրկնակի թարգմանության կենթարկվեին։

*քանի որ Խախանաշվիլու նշված գրչագրի տեղն ու վիճակը մեզ հայտնի չէ, և «Պղնձէ քաղաքի» պատմությունը թարգմանել է բառացի, ուստի տեքստաբանական մեջբերումները կկատարենք ռուսերենից:*

Был в городе Багдаде царь, по имени Абдумелик. Раз он собрал на площади народ и мудрецов и просил их поведать как Соломон властвовал над дьяволами. Выступил из толпы один визир и сказал: «Могучий и славный царь, есть некий купеческий сын, который сказал: «Я был на Селави[24], сорок дней и ночей блуждал по морю и, когда поднялись на одну высокую гору, нашли там черных безобразных людей, которые нас приветствовали и взяли сначала к себе, а через три дня на рыбную ловлю, закинули неводь и вытащили из моря кувшин с свинцовую печатью Соломона.

*Կայր ի Պաղտատ քաղաքն խալիֆայ մի, որում անունն էր Աբդումելիք. օր մի ի մէյտան իջու՝ ժողովեց զիւր մեծամեծքն, եհարց վասն Սողոմոնի, թէ որպէս հրաման առնէր ի վերա դիւացն: Յառաջ եկեկ ամիրան և ասաց. «Հզօր և մեծ խալիֆայ, կայ մարդ մի, որդի է վաճառականի և ասաց, թէ ես գնացի ի սելիկիայ կղզին և մոլորեցաք ի ծովին խ օր, և ապա ելաք ի լեառն մի բարձր, և ամէնեքին ոչ ճանաչեցաք զանգին և տեսաք մարդիկ սև, և այլադէմ. բարև ասին և տարան ըղմեզ ի տանս իւրեանց: Եւ կացաք Գ օր և ելեալ գնացին ի ծովն ի յորս և առան ըզմեզ ի հետս իւրեանց. արկին զգործին և կալան շատ ձուկ և ի հետ ձկանց բերին կուժ մի արճիճով, մանեհարած Սողոմոնի մօհրովն:*

*Համադրվող պատումների բացահայտ նույնությունը չունի այլ բացատրություն, քան վրացերենի՝ հայերենից թարգմանված լինելը, ինչպես նկատել էր Ա. Խախանաշվիլին. «ամենայն հավանականությամբ հայերենից է թարգմանված»[25]: Հարցի այս կողմն սպառված համարելով, այժմ քննենք վրացական պատումում եղած «նույնությունները», որ կարող են այլ բան վկայել: Խախանաշվիլին փորձել է մեկնել* Харебу *տեղանունը, բայց քանի որ ձեռագիրը չէ՝ հարցականի տակ է դրել: Ահա այդ նախադասությունը.*

...В числе 2000 всадников прибыли они в страну Харебу.

*Եւ գնացին ԲՌ ձիաւորքն ի չին և անցին ի ներս: Եւ հասին [ժ]անմարղարճակ աշխարհն...*

*Որ աղավաղված է: Այս դեպքում, բնականաբար, սխալ թույլ տվողը Խախանաշվիլին է սխալ ընթերցել տեքստը, կամ թարգմանիչը: Բայց ըստ էության՝* Харебу > *խարաբա* > خرابة *պարսկ.* خرابه *բառացի՝ ավերակ: Թյուրիմացությունը բառիս իբրև տեղանուն ընկալելն է: Գրական վրացերենով կլիներ* და შევიდეს აოხრებულსა ქვეყანასა, *իսկ խարաբա—*ხარაბა*-ն պարսկերենի ազդեցությամբ նախ՝ խոսակցական, ապա մասամբ գրական լեզու մտած բառ է:*

*Երկրորդ նման երևույթը կապված է Ամիրան—*ამირანი *անձնանվան հետ-*

---

24 *«Հազար ու մի գիշերներ»-ում այս անվամբ է կոչվում Ցեյլոն կղզին:*

25 *Նշվ. աշխ., էջ 162, ծան. 1:*

Я, обессиленный, бежал, но **Амиран** погнался, по приказанию Соломона, за мною и схватил меня. Я просил **Амирана** защитить меня пред Соломоном. Связали меня свинцовыми и железными цепями, взвалили на меня каменные колонны и подняли на эту гору...

*Փախեայ ես, և* **Ամիրաթն** *անկաւ ի վերա իմ. ես աղաչի զ***Ամիրաթն.** *երդմնեցուցանեմ զքեզ յաստուած կենդանին, որ ազատես զիս առաջի Սողոմոնի արքային բարկանանել չասա, որ և տարաւ յետոյ, և ետ բերել զայս քարէ սիւնս և զնստանեաց զիս ապա երկաթ և արճիճ և պղինձ և հրամայեաց Ամիրաթին, որ շալկեաց զիս քարովս և եբեր յայս լեառս որ կաւ տեսանէք։*

*Արդեն նշել ենք, որ Խախանաշվիլին առանձնապես ծանոթություններով չի օժանդ տեքստը, բայց Ամիրան անվան ստորանիշի տակ այսպիսի հղում է կատարում.* «герой грузинской сказки». *Հետևաբար այս Ամիրանը նույնացնում է վրացական «Շղթայակապ Ամիրան»-ի հետ, մինչդեռ հայկական պատումում Ամիրաթ է։ Անկասկած Ամիրաթն ու Ամիրանը («Պղնձէ քաղաքի» տեքստում) նույնն են։ Մեր կարծիքով երկու հանգամանք է պայմանավորել Ամիրաթ-ի Ամիրան դառնալը. ա) վրաց նուսխախուցուրի գրչությամբ «թ»-ն և «ն»-ն հեշտությամբ կարող են շփոթվել միմյանց, մանավանդ երբ գրչությունը աղավաղված է։ Այս դեպքում, բնականաբար, սխալ թույլ տվողը Խախանաշվիլու ձեռքի տակ եղած ձեռագրի գրիչն է, որ, արտագրողները, ժողովածուն կազմելիս սխալ է ընթերցել նուսխախուցուրի օրինակը. ուրեմն՝ XVIII դարում գոյություն է ունեցել «Պղնձէ քաղաքի» այլ օրինակ ևս. բ) Հիշյալ հատվածի բովանդակությունը (մանավանդ շղթայվելը) արդարև նման է վրաց «Ամիրանի» պատմությանը։ Այսքան մերձությունը ուշադիր գրչին կամ նույնիսկ թարգմանչին հեշտությամբ կարող էր գայթակղեցնել։ Մինչդեռ ստուգաբանությամբ Ամիրան անձնանունը, հավանաբար, պետք է առնչել Միհր, Մհեր, Ահրիման և այլ հերոսապատում անձանց հետ, իսկ Ամիրաթը՝ Ամիրի։*

*Վրացագետները մինչև այսօր բանավիճում են «Ամիրանի» գրական մշակման հետ (Ամիրանդարեջանիանի) ժողովրդական բանահյուսության անցնելու և հակառակի շուրջ։ «Պղնձէ քաղաքի» պատմությունը ձևավորվել է անկախ վրացերենից և Վրաստանից շատ հեռու, ուրեմն «Ամիրանի» որոշ սյուժետիկ գծեր պետք է արևելյան գրականության մեջ փնտրել։ Հետևաբար, նշածս հատվածը գրականության մեջ ժողովրդական բանահյուսությունից XII—XIII դարերում «ավանդության» մուտքի ապացույց է։*

*Անցնենք համառոտ (չափածո) պատումին։*

*«Պատմության» տողատողը նշում է, որ* „ამბავად იყო ნათქვამი, ლექსად გამოთქმულია"[26] *(արձակ էր պատմված, այժմ՝ բանաստեղծությամբ շարադրեալ), այլ կերպ՝ վրաց գրականության մեջ գոյություն է ունեցել* „სპილენძის-ქალაქიანი"*-ի համառոտ պատում, որ և հետագայում վերածվել է չափածոյի։ Պրոֆ. Կ. Կեկելիձեն այդ կապակցությամբ գրում է. «այն արձակ թարգմանությունը, որ հետագայում չափածոյի են վերածել, բոլորովին այլ է եղել, քան Խախանաշվիլու (թարգմանածը»)*[27]*, իսկ թե ո՞ր լեզվից*

---

[26] *Թբիլ. Ձեռ. ինստ.* S—101, *էջ 35ա*

[27] კ. კეკელიძე. ძველი ქართული მწერლობის ისტორია. II$^{3}$, *էջ 342։*

է թարգմանվել, ե՞րբ, ինչո՞ւ երկու տարբեր պատումներով՝ վրաց բանասիրությանը դեռ հայտնի չէ։ Պրոֆ. Կ. Կեկելիձեն շարունակում է. «ո՞վ է չափածոյի վերածել այս անծանոթ պատումը (խոսքը վերաբերում է համառոտին — Պ. Մ.)՝ չգիտենք, ոչ էլ այն գիտենք, թե ով կամ երբ փոխադրեց արձակ պատումները մեր գրականություն»։ Այս հարցադրումների մեծ մասին կարելի է պատասխանել՝ վրաց չափածո պատումը հայկական համառոտ խմբագրության հետ համադրելով։

Վերևում նշեցինք, որ հայկական տարբերակները սոսկ գեղարվեստականությամբ չէ որ զանազանվում են միմյանցից, այլ նաև՝ կառուցվածքով ու անձնանուններով։ Նրանց հարաբերությունը պարզելու համար բաղդատենք մի քանի հատված։

Համառոտ

*Կայր խալիֆա մի ի Պաղտատ քաղաք, եւ աւէին անուն նորա Աւտուլ Ազիզ։ Աւր մի եղաւ ըստ սովորութեան իւրոյ եւ խաղայր ի մոյդանն։ Եւ երեկ մարդ մի եւ աւեն զանուն նորա Դալիֆ. երեկ եւ ծունր էած խալիֆային եւ ասէ. Հզաւր խալիֆա, քաղաք մի կայ ի Հիւսիսոյ դէհն, անուն նորայ, Պղնձէ քաղաք. մատ ի յն քաղաքն են ան դեւքն, որ Սողոմոն ի կժերն էած եւ արճիճով զրերան կալաւ եւ մատնէհարեց։*

*Կոչեց խալիֆան զԱմիր Մուսին եւ ասէ. եկ գնա, գիտ զան դեւքն, որ Սողոմոն զնդանել է։*

*Ասէ Ամիր Մուսին. Ոչ գիտեմ զճանապարհն եւ կարդացել եմ գրով։*

*Ասէ խալիֆան։ Հալեւոր մի կայ ի քաղաքս. Նա գիտէ զճանապարհն. հետ քեզ առ եւ գնա…*

Ընդարձակ

*Կայր ի Բաղդադ քաղաք խալիֆայ որում էր Աբդլ Մելիք (անուն)։ Օր մի իջու ի մէյդան, ժողովեաց զիւր մեծամեծքն, եհարց վասն Սողոմոն արքային. թէ ուրպէ՞ս անէր հրաման ի վերայ դիւացն։*

*Յառաջ եկաւ ամիրա մի եւ ասաց. հզօր եւ մեծ խալիֆայ, տեսի այր մի որդի մեծ վաճառականի, ասաց թէ ես գնացի ի Սեյլեկեաց կղզին. ի ծովն մոլորեցաք քառասուն օր, յետոյ եկաք ի լեառն մի բարձր որ ամենեւին ոչ ճանաչեաք զտեղին. տեսաք մարդիկ սեւ, այլադէմ, բարեւ տուին եւ տարան ի տունս իւրեանց, կացաք անդ երեք օր, ի ծովն յորս գնացին. եւ տարան զմեզ ի հետ, արկին զգործիսն ի ջուրն եւ բաղում ձուկն բռնեցին. եւ ի հետ ձկանցն բերին կուժ մի արճիճով մատնէհարած Սողոմոնի մատնէհարով. բացին զկուժն, ելաւ սեւ մուխ, բարձրացաւ յօդս, եղեւ կերպարան դիշատեսիլ մարդոյ։*

կամ՝

*Ես խումար էի. մտայ ի կուռքն եւ ի խուսք հանի. ասացի թէ մենք առնուք զնորա կարողութիւն եւ տանք մեր հեծելխ։ Յորժամ լսեց զայս Թագաւորն, ուրախացաւ եւ զեյլին ծեծեց եւ արատ պեղծ պատասխանի. Ասա.*

*Ես պարծեցայ թէ ըզՍողոմոնի վեզիրն զԱմիրաթն բերեմ առաջի իմ պարոնին, կանչեցի և խառնեցայ ի հեծելն ասելով. թէ զայլ ոք չուզեմ բայց զքեզ Ամիրաթ. եկ զի տեսցուք զիրար և նա եւ գոչեաց ահեղագոչ*

*թէ դու (տո) խս ոչ գաս, ես առ քեզ գամ։*

*Գնաց եւ ասաց Սողոմոնին.*

*Եւ Սողոմոն թագաւորն աշողցաւ եւ երեր քաջք եւ զամէն հուրեկ։ Եւ Սողոմոն աշողցաւ ի մէկայլ դէհէն եւ գազանաց հրամայեաց, որ երկու բաժին եղան. կէսն ի աջ եւ կէսն ի ձախ. եւ թռչնոցն հրամայեաց, որ ի ալքերն ի վար կռլէին, եւ նստաւ Սողոմոն կաղուծ թախտն եւ վեզիրն հրամայեաց Դեմեախանին, թէ...*

*ձայնիւ. և ինձ թվեաց այսպէս, թէ երկինքն պատառեցաւ և փլաւ ի վերա իմ, բեկեցաւ մէջք մեր հեծելին ի սաստիկ ձայնէ նորա և երբ խառնեցաք ամենքս, թռչունքն չըտային մեզ աչք բանալ, գազանքն և սողունքն աղշեցուցին զմեզ և բազումք մեր զորացն մեռաւ, ապա առաք Ամիրաթն յիրար Զ ժամ, կռվեցաք մինչ որ ձանձրացաք երկուսս... (Գիրք Պատմութեան որ կոչի Գղնձէ քաղաք, 1792 թ., էջ 1—2)։*

*Միշտ այսպիսին է նաև վրացական պատումների տարբերությունը միմյանց հարաբերմամբ։ Այժմ մնում է համեմատել հայկական ու վրացական «համառոտ» պատումները*[28]*։*

| Վրաց. համառոտ (*չափածո*) | Հայկ. համառոտ |
|---|---|
| *ա) Սկսվում է Գղնձէ քաղաքի որոնմամբ, ապա՝ դևերի։* | *Նույնն է (հմմ. նախորդ մեջբերումը)* |
| *բ) Ճանապարհվում է 1000 ուղտ՝ ջուր կրելու և հազար՝ հաց*[29]*։* | *Նույնն է (առէ հալեւորն. պիտի հետ մեզ հազար ուղտ, որ պչուրն տանի, հազար ուղտ, որ զապրանք տանի)* |
| *գ) Զորավարի անունն է Դեմեդիս* | *Նույնն է (տե՛ս վերևի հատվածը)։* |

*Կան նաև շատ այլ ընդհանրություններ։*

*Անկասկած նույն խմբագրությունն է, նույն պատումը։ Մենք հնարավորություն չունենք լեզվական հարաբերում կատարելու, քանի որ առայժմ հայտնի է վրացական համառոտ պատումի չափածո տեքստը միայն։ Մեր նպատակն է պարզել ե՞րբ է վրացերենի թարգմանվել այս տարբերակը և հնարավոր ի՞նչ լեզվից։ Հայերենը, ինչպես վերևում տեսանք, թարգմանվել է X դարի վերջերին «ի արաբ լեզուէ»։ Ինչ վերաբերում է վրացերենին, ապա դժվար է կռահել անմիջական փոխադրություն է արաբերենից, թե՝ հայերենի միջնորդավորմամբ։ Վերջինիս օգտին խոսող մի փոքրիկ փաստարկ կա միայն. վրացական տեքստում կարդում ենք.*

ეს ტაბლა იყო იონთა მეფისა ხელმწიფისა...

*Երեկ հալեւորն եւ կարդաց։ Եւ էր գրած յունէրեն գրով.*

*նա մեկնեց յունէրեն ի տաճիկ լեզու...*

*Վրաց մատենագրության մեջ հույները կոչվում են* ბერძენ-*ներ, մինչդեռ այստեղ* იონ- *է։ Արաբները նույնպես հույներին յուն են անվանում (Հունաստան* — اليونان*, հունարեն-հունական* — يوناني*)։ Բացառված չէ բառիս*

---

[28] *Հոդվածը չծանրաբեռնելու նկատառումով բնագրի չենք ցիտում։*

[29] ატასი კარგი აქლემი წყალი რომ იქა ზიდვსა, ათასი საჭმლის მზიდავათ იაროს რომ დამჭირდება. (S—101, *էջ 37ա*)։

անմիջական փոխանցումը արաբերենից (այդ դեպքում անմիջական թարգմանություն է), բայց, մեր կարծիքով, ավելի հավանական է հայերենի յոյն > ჲონ դառնալը, մանավանդ այսպիսի հնչյունափոխության բազմաթիվ օրինակի դեպքեր ունենք: Նույնքան պարզ է և ժամանակի հարցը. բանասեր Պավլե Ինգորոկվան իր հազար էջանոց „გიორგი მერჩულე" (1954 թ.) աշխատության մեջ ակադ. Ն. Մառին, Կ. Կեկելիձեին և պրոֆ. Իլ. Աբուլաձեին զանազան ոչ գիտական մեղադրանքներ է ներկայացնում՝ նրանց այն պարզ տեսակետի համար, որ Տայքի ու Կղարջքի հայ բնակչության որոշ մասը VIII դարից սկսած վրացախոս է դառնում (ապացույց՝ Իլ. Աբուլաձեի հրատարակած հայկական վարքագրական երկերը՝ վրացախոս հայերի կողմից թարգմանված): Մենք չենք վկայակոչելու վրաց թագավոր Բագրատ IV-ի (XI դ.) հրովարտակը Միջնաձորի ու տանուտերերի մասին (վրացերենում այդպես էլ կոչված են), ոչ էլ Եվստաթիոս Բոյիլասի կտակը (1059 թ.)[30], բայց „გიორგი მერჩულე"-ի հեղինակը ի՞նչ կասեր Դավիթ Կուրոպաղատի «Պղնձէ քաղաքի» պատմության «առաջի թագաւորացն եւ իշխանացն» արաբերենից հայերեն թարգմանելու պատվերի մասին:

Մինչև «Պղնձէ քաղաքի» և այդ շարքի մյուս զրույցների այս նոր խմբագրության հայտնաբերումը Տայքի բարբառով մեզ հայտնի էին երկու սակավախոս նախադասություններ (Միքայել Մոդրեկելու «Տաղարանի» և Հիպոլիտի «Մեկնություն երգ-երգոցի» վրացերեն թարգմանության հիշատակագրություններում)[31]: Իսկ այժմ պարզվում է, որ Տայքի հայոց բարբառը X դարում ոչ միայն չէր մահացել, այլև մշակմամբ հասել էր գրական լեզվի կարողության:

Վերադառնանք թարգմանության ժամանակի հարցին:

Վրաստանի պատմության մեջ այնքան նշանավոր Դավիթ Կուրոպաղատը (պակաս առնչություն չունի նաև հայոց պատմությանը), կարո՞ղ էր արաբերենից հայերեն թարգմանել տալ, իսկ վրացերեն՝ ոչ: Մեզ թվում է, որ չէր կարող. դեռևս VIII դարից սկսած վրաց մշակույթի զարգացման օջախներ են դառնում Խանձթան, Օփիզը, Արտանուջը, Շատբերդը և այլն: Այս շրջաններից նույնիսկ բյուզանդական գրական երևույթներին արձագանքող վրաց մատենագիրները հազիվ թե անհաղորդ լինեին Կուրոպաղատի արքունիքի գրական կյանքին գոնե: Միթե վրացերենը Կուրոպաղատի համար «ընտանի» լեզու չէր: Եվ ապա՝ «Պղնձէ քաղաքի» հայերեն այս թարգմանությունը, ըստ երևույթին, XII դարում դառնում է սակավ հայտնի (գուցե և անհայտ, որովհետև մինչև հիմա եզակի գրչագրով է հայտնի), այլապես Առաքել Սյունեցուն հարկ չէր լինի վերաթարգմանել արաբերենից: Մեզ թվում է արաբական բնագրի այս խմբագրությունը ևս X—XI դարերից ոչ շատ ուշ մոռացության է տրվել, կամ տեղի է տվել նոր՝ ընդարձակ պատումի, որ հասել է մեզ: Եթե արդարացի է մեր պատճառաբանությունը, ապա „სპილენძისქალაქიანი"-ն վրաց գրականության պետք է մուտք գործեր Դավիթ Կուրոպաղատի օրոք կամ նրան մերձ շրջանում: Քանի դեռ չափածո վերածողի տրամադրության տակ եղած վրացական տեքստը հայտնի չէ, դժվար է վերջնական խոսք ասել այս մասին[32]:

30 Հ. Բարթիկյանի շնորհակալ հրատարակությամբ, Բանբեր Մատենադարանի, № 5, էջ 393—430:

31 Այս մասին տե՛ս Ի. Աբուլաձեի արժեքավոր հոդվածը («Բանբեր Մատենադարանի», № 4, էջ 35—42):

32 Դավիթ Կուրոպաղատի թագավորության տարիներից սկսվում է վրաց մատենագրության զարգացման երկրորդ շրջանը՝ կապված Վրաստանի սոցիալ-տնտեսական ու պետական առաջ-

Ինչ վերաբերում է ամբողջական «Պղնձէ քաղաքի» չափածոյի վերածելուն, ապա բանաստեղծը մի առանձին գեղարվեստական շնորհ չի ունեցել. ամենից շատ զգացվում է «Վարդենավորին» նմանվելու միամիտ ցանկությունը: Տվյալ դեպքում մենք նկատի ունենք ոչ թե 16 վանկյա չափը (որի գերությունից միջնադարյան վրացի քիչ բանաստեղծներ կարողացան ազատվել), այլև պատմելու ոճը, մասնավորապես «ամբավների», գեղարվեստական հնարանքները և այլն: Այսպես, օրինակ, վերնագրում է. „აქა ამირ მოსე და ბერი აბდულა და დალიფ წავიდნენ ქალაქის საძებრად" ճիշտ «Վարդենավորի» ոճով: Երբեմն նույնությամբ են գործածվում Շոթա Ռուսթավելու էպիտետները. ხელმწიფე... მდაბალი, უხვი, მოწყალე: Բանաստեղծը քաջածանոթ է նաև Ֆիրդուսու «Շահնամեին», համանուն վրացական պատումներով, որով կարելի է բացատրել «Թուրանդ»-ի գործածումը տեքստում.

სხდის მარგალიტი ტაბლახა სხვილი მართ
ვითა სურანი:
არ ეფახების ხმელეთი, არათუ არის მართ
ვითა თურანი,
ნახეთ უხანო სოფელი არის მართ
ვითა ბურანი,
და მოსე და დალიფ ტიროდეს ამა
სოფლისა მდურანი

Չափածոյի ստեղծման ժամանակի հարցը լուծված չի համարվում. արձակ պատմությունները չափածո դարձնելու տրադիցիա ստեղծվեց XVII—XVIII դարերում՝ մասամբ «Վարդենավորի» և մասամբ՝ պարսից գրականության ազդեցությամբ: S—101 ձեռագրի դրչական տվյալները ճիշտ XVIII դար էլ վկայում են: Թե ով էր պատմության տաղասացը՝ չգիտենք:

Այսպիսով, «Պղնձէ քաղաքի» պատմությունը հայ և վրաց գրականության մեջ հայտնի է երկու պատումներով՝ համառոտ և ընդարձակ, ըստ որում վրացերեն ընդարձակ խմբագրությունը թարգմանված է XVIII դարի հայկական հնատիպ հրատարակություններից, իսկ համառոտը՝ X դարում, նույն սկզբնաղբյուրից կամ Դավիթ Կուրոպաղատի պատվերով «ի հայ լեզու» թարգմանվածի միջնորդությամբ:

«Պղնձէ քաղաքի» պատմությունը, տակավին չուսումնասիրված մի հուշարձան է հայ-վրացական գրական փոխհարաբերությունների մասին: Պարզվում է, որ X դարի հայ-վրացական մշակութային մերձությունը չի սպառվել զուտ վարքագրական բնույթի երկերի թարգմանությամբ, ինչպես մինչև այժմ կարծում էին, այլ թափանցել է նաև աշխարհիկ գրականություն: Այլևս անընդունելի է այն տեսությունը, թե Տայքի շրջանում (և առհասարակ) գրական փոխանցումները հոգևորական նեղ շրջանի գործունեության արդյունք են եղել:

---

ընթացքի նոր գործոնների հետ: Վրաց բանասիրության մեջ հաստատված կարծիքի համաձայն, աշխարհիկ բովանդակության գրականության սկիզբ է համարվում (անկախ ազգային կամ թարգմանական լինելուց) XII դարի վերջը՝ Գուրգանիի «Վիս ու Ռամին» սիրավեպի Սարգիս Թմոգվելու թարգմանությամբ: Ինչպես երևում է, մոտ ապագայում հարկ կլինի վերանայել այս տեսությունը, որովհետև «Պղնձէ քաղաքի» պատմությունն ու այդ շարքի մյուս գրույցները ևս «աշխարհիկ են» և, եթե մեր թվագրումը ընդունվի, մոտ երկու հարյուր տարով նախորդում են «Վիս ու Ռամինին»:

սուկ, այն էլ՝ խառիվ երկարնակությամբ պայմանավորված: Մեր քննած փաստերից երևում է, որ մշակութային այդ կապերն անհամեմատ ավելի լայն ծավալ են ունեցել:

«Գընձէ քաղաքի» ուսումնասիրությունը կանխում է հայ-արաբական և վրաց-արաբական գրական կապերը մեկնող գիտնականների այն կարծիքը, թե արաբական խալիֆաթի քայքայումից հետո արաբալեզու գրականությունը հայերին ու վրացիներին անհաղորդ է դառնում: Մեր հիշած զրույցաշարը ճիշտ հակառակն է ապացուցում: XVII դարի Վրաստանը թեև թշնամաբար էր տրամադրված Պարսկաստանի հանդեպ, մինչդեռ այդ չէր խանգարում Թեյմուրազ արքային՝ «պարսից լեզվի քաղցրությունը» սիրելով, հետևել ու փոխադրել պարսկական գրականության նմուշներ:

«Պատմութիւն Գընձէ քաղաքի» զրույցի գեղարվեստական-բանասիրական արժեքավորումը չի սպառվում թվարկվածով[33]: Միջնադարյան լավագույն բանաստեղծներ Կոստ. Երզնկացին («Բանք յաղագս անցաւոր մեծութեան...» որ «ի Շահնամայ ձայն» է գրված) և Մկրտիչ Նաղաշը ազդվել են նրանից, հատկապես «կաֆաներից» (ողբ): Անշուշտ, գեղարվեստական լուրջ երկը միայն կարող էր միմյանցից բավական հեռու բանաստեղծների վրա ազդեցություն թողնել:

«Գընձէ քաղաքի» տեքստը մի շարք ուղղումներ է մտցնում արաբական փոխառությունների հնչյունաբանական փոփոխման ու ժամանակի հարցերում (այդպիսի բառեր են, օրինակ, էլչի (թրք-արաբ-հայ.), թապտիր, մօհր, սնհալար, մուխաթը և այլն):

«Գընձէ քաղաքի» հայերեն պատումները, բացի վրացերենից, թարգմանության սկզբնաղբյուր դարձան նաև թուրքերենի համար, որ կատարված է հայատառ, 1706 թվին և «Թարգմանեալ է Եաղուպ զատե Յովհաննէսէ» (Վիեննա, ձեռ. 988, էջ 105—164):

---

33 Միջնադարյան աշխարհիկ բնույթի Պատմությունների կամ Զրույցների մասին մատենագրական առկա տեղեկություններ ունենք: Դեռ երևույթին Մ. Խորենացուց հետո (վիպասանական հատվածներին վերաբերող նրա դիտողություններից) եկեղեցական գրականությունը դարերի ընթացքում աշխարհիկ թեմաների և նրանց հետ կապված գեղարվեստական նոր ժանրերի նկատմամբ բացորոշ գերակշռություն է ունեցել: Վարքագրական-վկայաբանական ժանրը «Հոգեւոր սուրբ հերոս»-ի բնութագրման և ամբողջականացման ընթացքում սյուժետային ու գեղարվեստական հնարանքի շատ եղանակներ ժառանգել է վիպասանական կամ «Հեթանոս» պատմություններից: Մինչդեռ X դարից, դույն արաբական խալիֆաթից հետո սկսված տնտեսական-քաղաքական տեղաշարժերով պայմանավորված, աշխարհիկ պատմությունները նորից են կենդանանում (անկախ ազգային ու թարգմանական լինելուց) և աստիճանաբար լուրջ մտահոգում հայ եկեղեցական նշանավոր գործիչ-մատենագիրներին: Հովհան Որոտնեցին Արիստոտելի «Վերլուծականի» նմանողությամբ եկեղեցական վարդապետությունը (իմա՝ գրական երկ) բաժանում է հինգ մասի, որ չորրորդն այն է «որ սուտն շատ է քան զճշմարիտն, որպէս պատմութիւնք բազուրաց և զովեստ նոցին, ճշմարիտն սակաւ, որ խոկալս կենաց և գործք ի սուտն շատ, զի ի վեր քան զճշմարիտ եղեալն բարդեալ է զանազան զովեստ և ներբողեան, որ ինչ ոչ եղեալ»: Իսկ «Գընձէ քաղաքի» ու այս շարքի մյուս զրույցները ավելի խիստ են բնորոշվում: «Իսկ երկրորդ, որ ամենեւիմբ սուտ, որպէս առասպելական գիրք բստ պատմութեան Արամազդեա և Հերմա, այպէս և ի նորս Գընձէ քաղաք և Շերանշահ և այլ[ք] այսպիսիք, որ ամենեւիմբ սուտ են» (Յովհաննու Որոտնեցւոյ «Համարեալ ի բանից իմաստասիրաց», հրատ. Ս. Լալաֆարյան, Ս. Արևշատյան, «Բանբեր», № 3, էջ 378—379):

П. М. МУРАДЯН

# ОБ АРМЯНСКИХ И ГРУЗИНСКИХ ВЕРСИЯХ «СКАЗАНИЯ О МЕДНОМ ГРАДЕ» И ИХ ВЗАИМООТНОШЕНИЯХ

(Резюме)

Раннесредневековое «Сказание о медном граде» в числе других индийских сказаний проникло через персидскую письменность в арабскую, а затем—армянскую и грузинскую литературу.

В 1958 году арменист Н. Акинян обнаружил и опубликовал неизвестную армянскую редакцию «Сказания о медном граде» («Андэс амсорэа», 1958, 1—4, стр. 21—48). В армянской литературе имеются три варианта данного сказания, но в двух основных редакциях: а) краткая, перевод X века (по заказу Давида Куропалата), б) расширенная (перевод Аракела Анеци-Ширакаванци и версия, обработанная Гр. Ахтамарци).

Вследствие сводного изучения грузинского и армянского текстов этой истории выяснилось, что в древнегрузинской литературе также, соответственно армянскому, существуют две редакции:

а) Краткая—стихотворная (рук. S-101), первоначальный текст которой исходит из того же оригинала, что и армянская краткая редакция.

В настоящее время данная редакция сохранилась в единственном экземпляре, но уже в XIII веке она была редкостью, потому и возникла необходимость нового перевода (Аракел Анеци). Возможно, что арабский подлинник краткой редакции в это время также уступил место новой, т. к. последующие переводы представляют только вторую редакцию.

Если бы оригинал грузинской стихотворной версии был переведен позднее X—XI вв., то мы бы имели не краткую, а расширенную редакцию. Следовательно, «Сказание о медном граде» в грузинской письменности впервые появилось при жизни Давида Куропалата или незначительно позднее его. Что же касается языка оригинала, то им мог быть и арабский и армянский (слово იონი ‖ յոյն —грек говорит, кажется, в пользу последнего).

б) Расширенная—в прозе, дословный русский перевод которой издал Ал. Хаханашвили. Благодаря армянскому тексту (вторая редакция) выяснилось, что некоторые собственные имена (страна Харебу, Амиран) представляют искажение соответствующих имен армянского текста (Амиран-Амират, Хареба < խարաբա خراب). Следовательно, вторая грузинская редакция переведена с армянского издания 1708—1731 годов, в том же веке.

«Сказание о медном граде»—новое доказательство армяно-грузинских литературных взаимоотношений в средневековье.

Нововыявленная армянская редакция представляет исключительную ценность для изучения тайкского диалекта армянского языка, а также ряда других вопросов исторического характера.

P. M. MOURADIAN

# VERSIONS ARMENIENNES ET GEORGIENNES DE „L'HISTOIRE DE LA VILLE DE CUIVRE" ET LEURS RAPPORTS

"L'Histoire de la Ville de Cuivre" est un des contes hindous du début du moyen âge qui se sont introduits dans la littérature arabe puis dans les littératures arménienne et géorgienne, grâce à la langue persane.

En 1958, l'arméniste N. Akinian découvrit une rédaction arménienne ignorée de „l'Histoire de la Ville de Cuivre" (voir revue „Handes Amsorya" n° 1—4, 1958, p. 21—48).

La littérature arménienne connait trois versions de „l'Histoire de la Ville de Cuivre" en deux rédactions distinctes: a) la rédaction abrégée (traduction du X^e siècle, accomplie sur l'ordre de David Curopalate; b) la rédaction augmentée (traduction de Arakel Anétsi Chirakavantsi et version de Gr. Aghthamartsi).

L'étude des textes arméniens et géorgiens a permis d'établir que la littérature géorgienne comporte également deux rédactions:

a) la rédaction abrégée et versifiée (manuscrit S—101) dont le texte original est aussi celui de la rédaction arménienne abrégée. Nous ne possédons actuellement de cette rédaction qu'un exemplaire unique. Au XIII^e siècle déjà c'était une pièce rare, d'où naquit la nécessité d'une nouvelle traduction: celle de Arakel Anétsi. Il n'est pas exclu que l'original arabe de la rédaction abrégée ait cédé sa place à un nouveau texte: les traductions ultérieures représentent toutes une deuxième rédaction.

Une traduction géorgienne du texte versifié qui aurait été postérieure X^e ou au XI^e siècle nous aurait mis en présence non plus d'une rédaction abrégée, mais augmentée. Il s'ensuit que „l'Histoire de la Ville de Cuivre" a fait son entrée dans la littérature géorgienne du temps de David Curopalate soit plus tard. Quant à la langue de l'original, elle a très bien pu être l'arabe ou l'arménien (le mot იონი || յոյն—grec, semble bien parler en faveur de l'arménien.

b) la rédaction augmentée en prose, dont la traduction littérale russe a été publiée par A. Khakhanichvili. Le texte arménien (seconde rédaction) a permis d'établir que certains noms propres (pays de Kharébou, Amiran) sont les déformations des mêmes noms qu'il contient (Amiran-Amirat, Kharéba—Խարաբա—خراب).

La seconde rédaction géorgienne est donc traduite d'après une édition de 1708—1731.

„L'Histoire de la Ville de Cuivre" témoigne des rapports littéraires arméno-géorgiens du moyen âge. C'est là un document extrêmement important du point de vue de l'étude du dialecte taïk dans la langue arménienne et d'autres questions de caractère essentiellement historique.